ԿԻՐԱԿԻ
ԱՊՐԻԼ
1
DIMANCHE
1er AVRIL
1979

# ՅԱՌԱՋ

ՄԻՏՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

ՕՐԱԹԵՐԹ
ՀԻՄՆԱԴԻՐ՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

LE NUMERO 1,80 F.

HARATCH

LE SEUL QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE OCCIDENTALE
83, RUE D'HAUTEVILLE, 75010 PARIS
Directrice : ARPIK MISSAKIAN

— Tél. : 770-86-60 — C.C.P. Paris 15069-82 E
Fondé en 1925 — 571027317 A R.C. PARIS

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
Ֆրանսա Տար. 260 Ֆ Վեցամսեայ 140 Ֆ
Արտասահման Տար. 300 Ֆ հատը 1 Ֆ. 80

54ՐԴ ՏԱՐԻ — ԹԻՒ 14.351 Fondateur : SCHAVARCH MISSAKIAN 54e ANNÉE — No 14.351

# Ծ Ա Ռ

Գալարուն ու խռհուն իգութիւնը ծառի
Երկրախոյզ խոնարհուած քամրացաւ իմ առջեւ
Ցնծութեամբ քեղնաւոր բազուկներ վերամբարձ
Թեւաբախ բացուեցին իմ առջեւ:

Քանզի հովն էր յուզիչ եւ թէ ծառն էր յուզուած.
Արդ թերթեր վարդագոյն թափուեցին իմ առջեւ,
Անտրտունջ թօթափեց խոստումներն իր թովիչ
Աստղազարդ մի երկինք իմ առջեւ:

Այլ քան հովը յուզուած եւ քան լոյսը յուզիչ՝
Սարսռագին մոխրացող ծաղիկներ իմ առջեւ.
Եւ վիժած աստղերից արեւներ երկնող այս
Բարգաւան բերկրութիւնն իմ առջեւ:

# LES EXILES

Je n'ai jamais pu accomplir ce désir : aller trouver Harout dans sa montagne provençale. Son désir, mais surtout le mien.

Quand j'accomplirai, un jour, ce pèlerinage, ce ne sera plus qu'à la recherche d'une tombe perdue, dans l'intimité d'un de ces cimetières villageois, dont le charme a le pouvoir de vous réconcilier avec le Néant.

Il n'était pas facile de déloger Harout de sa montagne et combien grande fut notre joie, en ce début d'un printemps déjà lointain, quand Jean-Pierre Bodossian alla nous l'arracher de son refuge varois, pour nous l'amener à St. Raphaël, où nous l'attendions avec Chahnour.

Il ne reste que Papken et moi, pour nous remémorer ces heures si riches, où deux amitiés — Harout et Chahnour — se retrouvaient après trente-cinq ans de séparation. L'un retiré dans son ermitage montagnard, l'autre vivant sa dernière vie dans un Home pour vieillards arméniens, après avoir traîné d'hôpital en hospice, d'hospice en sana. Pas d'amertume pourtant, chez notre plus grand écrivain de la Diaspora, face au poète, qui, lui n'avait pas eu pour seule maîtresse la littérature. La pudeur des sentiments, de la souffrance tant physique que morale avait toujours dominé chez Chahnour. Ils parlèrent de Montparnasse, c'est-à-dire de leur passé, si lointain et soudain si proche ! Quelques années plus tard, chacun d'eux, lors d'un séjour parisien devait s'obstiner à rechercher son Montparnasse, et face à cette tour hideuse, s'interroger en vain à la recherche du temps perdu, dans un quartier perdu à jamais.

C'était aussi un jour d'Avril. Le mistral nous fouettait le visage, alors que nous regardions, de cette hauteur d'Agay, la splendeur de la baie et l'infini de la Méditerranée. Harout et Chahnour continuaient à bavarder. Ils avaient tant à se dire, depuis si longtemps. Et le temps qui s'écoulait, inconscient de sa cruauté, les obligeait à se hâter. Le soir devait tomber bientôt. L'un allait retrouver sa montagne, l'autre la solitude de sa chambre. Papken et moi, nous étions heureux et tristes. Heureux d'avoir réussi cette rencontre, tristes de l'impossibilité de la renouveler.

Et puis, le temps passa. Le destin voulut que le dernier écrit de Chahnour : « *Mais, le plus puissant était le rêve* » (à peine trois semaines avant sa mort) fût consacré au recueil d'Harout.

C'est ce rêve, qui nous reste aujourd'hui, plus puissant que jamais.

×

De nouveau, le temps passa. Mauvaise formule, au fond, puisqu'en réalité c'est nous, qui passons. Harout vînt nous voir à Paris, il y a un peu plus d'un an. Son port d'attache était Haratch. Il aimait, le soir venu, retrouver les copains. Nous parlions, poésie, littérature. Les projets ne manquaient pas : « L'an prochain à Erévan ». Il voulait y aller avec Zoulal, mais il fallait d'abord un passeport. Les patientes démarches d'un ami portèrent leurs fruits et le passeport arriva. Il est du reste toujours là, mais Harout n'est plus. Il repose maintenant dans un coin de Provence, face à la Méditerranée.



Pas très loin, un autre poète, Sarafian, ne retrouva sa Méditerranée, que bien tard, après sa mort, dans un autre cimetière de Provence.

Poète maudits de la Diaspora, Sarafian et Cosdantian restent encore reniés de l'Arménie. Même la mort n'a pas réussi à leur donner droit de cité. De quoi, donc, sont coupables ces Arméniens sans Arménie ? Les Nostradamus de l'absurde politique soviétique nous prêcheront sûrement la patience : il faut attendre, tout se fait progressivement, il y a un temps pour tout, il faut savoir attendre.

Nous ne savons pas attendre, nous autres, enfants maudits de l'exil arménien, parce que nous n'avons pas le temps.

Mais au fond, qu'importe ! Le label d'Erévan ne leur fut jamais indispensable pour être les valeurs les plus sûres de la gloire littéraire arménienne. Leur chant fut le plus beau, car l'art n'y servait que l'Art.

La fibre arménienne ne les quitta pourtant jamais. Au-delà de leurs tombes méditerranéennes, leurs chant nous parvient encore, dans cette aube printanière. Ils ne verront plus la Méditerranée, ils ne virent jamais l'Ararat. Leur Arménie à eux, ils dûrent la rechercher dans un vieux missel en Grabar, un chant de Komitas, le prénom d'un enfant et parfois simplement dans le nom d'un restaurant, qui s'appelait Ani.

Poètes maudits de l'exil arménien, éternels déracinés, ils viennent de retrouver leur dernier rêve, dans cette terre de Provence, si proche de la Méditerranée, mais si loin de l'Ararat.

ARPIK MISSAKIAN

Fonds A.R.A.M

